**1917** № 32—ՕԳՈՍՏ.-Ի 20 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասաքաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից.
Տպագրութեան ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում.

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնն պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՓՐԿՈՒԹԵԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

### (ՄՈՍԿՈՒԱՅԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ)

*Մոսկուայի պետական խորհրդակցութիւնը բացուեց օգոստոսի 12-ին հանդիսաւոր կերպով: Խորհրդակցութեան ներկայ էին ռուս կառավարութեան, կուսակցութիւնների, պետական հաստատութիւնների, զօրքի և ժողովրդի բազմաթիւ ներկայացուցիչները:*

*Խորհրդակցութիւնը բանում է ռուսական յեղափոխութեան ոգին՝ Կերենսկին, որ արտասանում է մի պատմական ճառ, որի մէջ մինիստր-նախագահը մի առ մի պատկերացնում է այն անել փորձութիւնը, որի մէջ ապրում է ամբողջ Ռուսաստանը:*

*«Այս մեծ և ահաւոր ժամին, ասում է Կերենսկին—երբ մեծ փորձութիւնների մէջ է ստեղծւում և ծնւում նոր, ազատ, մեծ Ռուսաստանը, ժամ. կառավարութիւնը վէճերի համար չի կանչել ձեզ այստեղ, մեծ երկրի քաղաքացիներ, որ ներկայումս առմիշտ թօթափել էք ձեզանից ստրկութեան, բռնութեան և կամայականութեան շղթաները. նա չի կանչել ձեզ քննելու ծրագրային խնդիրներ, որ որևէ փորձ անէք խլելու համար այն իշխանութիւնը, որ սահմանուած է յեղափոխութեան և ժողովրդի կամքով, որ պաշտպան է կանգնած հայրենիքի փրկութեան և յեղափոխութեամբ ձեռք բերուած ժողովրդական իրաւունքներին:*

*«Այլ նրա համար, որ բացարձակ և ուղղակի ասի ձեզ ճշմարտութիւնը այն մասին, ինչ որ սպասում է մեզ, ինչ որ կրում է այս րոպէիս մեր մեծ, տանջուած, չարչարուած հայրենիքը...»*

*Եւ այդ ահաւոր ճշմարտութիւնը գիտէ Ռուսաստանի մուժիկէն սկսած ամենաբարձր մտաւորականը. ամբողջ աշխարհը գիտէ, որ Ռուսաստանը կանգնած է այս վարկեանիս մի խոր անդունդի եզերքին, մի մեծ վտանգի առաջ, որի համար լուրջ և զօրաւոր միջոցներ են պէտք:*

*Կերենսկիից յետոյ խօսում են իրար ետեւից մի քանի մինիստրներ, երկրի կարեւոր ներկայացուցիչներ, կուսակցութիւնների ղեկավարներ և բանակի պատգամաւորներ, բոլորն էլ մատնանշում են ահաւոր վտանգը, երկրի ներքին և արտաքին ծանր կացութիւնը:*

*Երևան է գալիս, որ պետութիւնը ապրում է ֆինանսական ծանր ճգնաժամ, պետութեան գանձարանը դատարկուել է, այժմ ծախսերը աւելի շատ են լինում, քան նախկին կառավարութեան օրով: Պարենաւորման գործը դժուարին կացութեան է մատնուած, ամբողջ երկրին սպառնում է սով: Կառավարութեան կարգադրութիւնները չեն իրագործւում. ամեն կողմ բարձրացել է անիշխանութեան գլուխը:*

*Բայց ամենից սարսափելին գերմանական վտանգն է. ճակատի դժբաղդութիւնները, որ մտահոգում են ժամ. կառավարութեան. Թշնամին շատ տեղեր պատռել է ճակատը, թափան-*

ցել է երկրի ներսը, և այժմ սպառնում է պետութեան մայրաքաղաքին։

Այս սարսափելի փորձութեան դէմ առնելու միջոցների մասին, զանազան կարծիքներ են երևան գալիս խորհրդակցութեան մէջ։ Ոմանք, որոնց մէջ և գերագոյն հրամանատար Կորնիլովը, առաջարկում են երկաթեայ դիսցիպլին առաջ բերել զօրքի շարքերում, կառավարութեան լիազօրութիւն տալ երկրի մէջ կարգ և կարգապահութիւն մտցնելու։ Ուրիշները առաջարկում են ստեղծել այնպիսի կառավարութիւն, որ արտայայտիչը լինի երկրի բոլոր տարրերի ու խաւերի, թէ աշխատաւորական և թէ բուրժուական խաւերը ձայն ունենան այնտեղ։

Կան, որ առաջարկում են պատերազմը առաջ տանել մինչև յաղթական վախճան և ապահովել Ռուսական պետութիւնը։

Բոլոր հռետորների և ճառախօսների խօսքերից երևում է, որ անհրաժեշտ է վերջապէս վերջ տալ ներկայ անարխիային, ներքին դասակարգային կռիւներին և մտահոգուել հայրենիքի փրկութեամբ։ Վառել ամբողջ երկրում հայրենասիրութեան ոգին, կարգապահութիւն և խիստ դիսցիպլին մտցնել բանակի մէջ։

Թէ ինչ վճռական որոշումներ կտայ Մոսկուայի խորհրդակցութիւնը—մենք չըգիտենք. բայց կարելի է յոյս տածել որ գտնւում ենք փրկութեան ճանապարհի վրայ։

Ալ. Մանուկեան

# ԸՆԿԵՐԱՅԻՆ ՅԵՂԱՇՐՋՈՒՄԸ

ԵՒ

# ՌՈՒՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԵՐԵՒՈՅԹՆԵՐԸ

Մոսկուայի խորհրդակցութեան բացումը իր վրայ է հրաւիրեր ոչ միայն Ռուսիոյ, այլ և բոլոր աշխարհի դիւանագիտական և հասարակական շրջանակներու ուշադրութիւնը։

Այդ խորհրդակցութեանց բացումին, կառավարութիւնը յանձին վարչապետ ու պատերազմական և ծովային նախարար Կերենսկիի, շատ նշանակալից կերպով և պատմականօրէն ըրաւ իր յայտարարութիւնը։

Նոր շրջան մըն է, որ կը բացուի ռուսական յեղափոխութեան համար, կամ, ինչպէս ըսաւ Միլիւկով, յեղափոխութիւնը այլ ևս կը դադարի։

Յեղափոխութիւնը, իսկապէս տեղի ունեցած է. իսկ «յեղափոխութիւնը՝ շարունակելու» նշանաբանը, որ վերջի ամիսներուն շատ կրկնուեցաւ առաւելապէս «պոլշեւիկ» կոչուած սոցիալ-դեմոկրատական ծայրայեղ թեւին կողմէ, կերևի թէ այլ ևս վերջնականապէս սնանկութեան մատնուած է։

Իրականին մէջ ի՞նչ բան էր այդ «յեղափոխութիւնը շարունակելու» առաջադրութիւնը, եթէ ոչ՝ քաղաքական յեղաշրջումը շարունակել տնտեսական ընկերային գետնի վրայ։ Սակայն Ռուսիան այն երկի՞րն էր ճշմարտապէս, ուրկէ կարելի էր սկսել, կարելի էր ազդանշանը տալ Աշխարհի Ընկերային Շէնքին յեղաշրջման։ Անմիջապէս կարելի է պատասխանել—ոչ։

Ուշադրութեամբ հետեւինք հարցին։

Ընկերային յեղաշրջումը համաշխարհային նշանակութիւն ունի. ընկերական կեանքը, հասարակարգը, ինչպէս կըսեն, չի տարբերիր մէկ երկրէն միւսը, ոչ ալ տնտեսական պայմանները տարբեր հիմքեր և երևոյթներ կը պարզեն մէկ կամ միւս երկրին մէջ։

Ճիշտ է որ էականին մէջ միջազգային եղող այդ յեղափոխութիւնը, իր սկիզբը, թռիչքը պիտի առնէ, երբ օրը հասնի, որոշ երկրի մը մէջ։ Անիկայ պիտի ըլլայ գործը «Միջազգային» հսկայ կազմակերպութեան մը, որու համար ազգերը և պետութիւնները իրենց մէջ պատնէշներ չունին, սակայն այդ գործը պիտի սկսուի նոյն այդ Միջազգային խորովակէն, որոշ երկրի մը, որոշ պետութեան մը ծոցին մէջ, որ ամենէն աւելի պատրաստուած, հասունացած է և պայթելու մօտ, այդ մեծ դարասկիզբին հիմքը դնելու համար։

Այդպէս եղաւ ֆրանսական յեղափոխութիւնը։ Եւրոպայի ազատագրութեան համար հարկաւոր եղող արիւնը թափեց Ֆրանսան, սակայն շատ դիւրաւ և գրեթէ անզգալի կերպով, այնտեղ դարբնուած սկզբունքները դիւրահաղորդ կերպով սեփականութիւնը դարձան եւրոպական ժողովուրդներուն։

Այն՝ ինչ որ տեղի ունեցաւ Ֆրանսայի մէջ 18-րդ դարու լրումին, Եւրոպայի և ոչ մէկ ուրիշ ժողովուրդի մէջ կարելի էր երևան բերել և եթէ կարելի ալ ըլլար շարժումը համաշխարհային դարձնելու, սկզբունքները համեւրոպականացնելու յարմարութիւն, զօրութիւն, քաղաքական-աշխարհագրական-պատմական և ընկերական դիրք ոչ մէկ ուրիշ երկիր չունէր։

Ուրեմն ֆրանսական յեղափոխութիւնը, քաղաքական-ընկերային այդ մեծ դարագլուխը, լաւ ընտրուած, մտածուած և գործադրուած հաշուի և հարուածի արդիւնք էր։

Արդ, ժողովուրդները, հինգ քառորդ դար է, որ այդ յեղափոխութեան շնորհիւ ձեռք բերած են քաղաքական ազատութիւն—հաւասարութիւնը։ Հինգ քառորդ դար է, որ շնորհիւ այդ ազատութեան, ազատ մրցութեան, ճարտարարուեստի և վաճառականութեան զարգացումը հասնելով իր բարդ յառաջդիմութեան, սկսած է հասունացնել ընկերային նոր տեսակի իրաւունքներու խնդրայուզումը՝ անկախ մարդկանց կամեցողութենէն և գիտականօրէն գրեթէ ընդնշմարուած իր հաւանական լուծումը։

Ընկերային յեղաշրջումը, սոցիալական յեղափոխութիւն» (ինչպէս վերջին ամիսներու պզտիկ անիշխանութիւնը կը սիրէր հնչեցնել), ուրիշ բան չէ, եթէ ոչ բացարձակ յեղաշրջումը ներկայիս մեր ապրած ընկերային փոխ-յարաբերութիւններուն՝ իր բովանդակ առումով. ընկերային բոլոր այժմեան կապերուն հասկացողութիւններուն յեղաշրջումը՝ նորի մը կազմակերպութիւնը և կեանքի մէջ շրջաբերութեան դրուիլը։ Այդ հասկացողութիւններուն մէջ ամենասուր և ամենակնճռոտ կէտը ըլլալով տնտեսական հարցը, այդ յեղաշրջման ամենակենսական և ժողովրդականացած վարկածը՝ ընկերվարութիւնը՝ կը ծանրանայ ճարտարարուեստի, արդիւնաբերութեան, դրամագլխի և աշխատող բազուկներու վրայ։

Իմ նպատակը չէ այստեղ պարզել ո՛չ բռնի գործակցութեան և ազատ գործակցութեան ընկերային սիստէմները և ոչ ալ ընկերվարութեան վարդապետութիւնը։

Ես անդրադարձայ հարևանցի կերպով ոչ թէ նոր բան մը ըսելու կամ ըսուած բան մը բացատրելու համար, այլ պարզապէս վայրկեան մը անդրադառնալու այն յեղաշրջման էութեան, որու իրականացումը Եւրոպայի մէջ՝ այժմ և Ռուսիայէն սկսելով՝ շատ բնական գանողներ կային և կան։

Արդ, ինչպէս որ ըսի, ընկերային շէնքը իր էութեան և սկզբունքներուն մէջ համամարդկային է և չտարբերիր քաղաքակիրթ աշխարհի մէկ ժողովուրդէն միւսը։ Ընկերային յեղափոխութեան, այսինքն այդ շէնքի հիմնայատակ փլուզման և նորի մը կառուցման գործը ուրեմն համամարդկային է։

Ֆրանսական յեղափոխութեան մասին ակնարկած ատենս ըսի թէ ԺԸ. դարու լրումին, յեղափոխութեան հարուած մը,

Ֆրանսայի գահուն միայն տրուելով կարելի էր ցնցել ամբողջ Եւրոպայի միապետական և աղնուապետական կառուցուածքը։

Անկից մէկ դար առաջ, նոյնպիսի հարուած մը Քրոմուէլի և անգլիական ժողովուրդի ձեռքով Մեծն Բրիտանիոյ կղզիին վը-րայ, տրուած Սթուարդներու գահին, ոչ մէկ համեբոպական նը-շանակութիւն չունեցաւ և չունենալէ զատ, Շարլ Ա.-ի անմիջա-կան ժառանգ Շարլ Բ.-ը, անոր որդին, իբրև աւելի մեծ բռնա-պետական պատուհաս՝ նստաւ հօրը թողած գահուն վրայ։

ԺԷ. դարու անգլիական յեղափոխութիւնը ուրեմն չը վառեց հրդեհը, որով ֆրանսական յեղափոխութիւնը վառեց ամբողջ Եւրոպայի միապետական հասկացողութիւններու շէնքը։ Եւ շատ պարզ է, ԺԷ. դարու Անգլիան Եւրոպայէն կղզիացած, քաղաքա-կան ազդեցութեամբը միջակ և Լուի ԺԴ.-ի վեհափառ միապե-տութեան արշալոյսին՝ անընդունակ էր համաշխարհային տա-քելութիւն մը կատարելու։

Այժմ ուշադիր դիտեցէք այն առարկան, որը լծակ դարձնել կուզուի նոր օրերու խռէալը եղող յեղաշրջման։ Ռուսաստանն է անիկայ։ Ես ակնարկեցի կարծեմ այն հրատապ պայմանը, որ ամենակենսական մղիչը կրնայ ըլլալ ընկերային յեղափոխու-թեան։ Տնտեսական ճարտարարուեստական (Industrie) կեանքի անօրինակ զարգացումն է անիկայ։

Որու համար գաղտնիք է սակայն որ ճարտարարուեստա-կան-տնտեսական ամենայետամնաց երկիրը և աւելին քաղաքա-կիրթ կամ գոնէ ասիական ըմբռնումներու հայրենիքն է Ռու-սաստանը։ Ռուսաստանի ամենամեծ առկոսը գիւղացութիւնն է, այսինքն տարր մը, որ ոչ մէկ կերպով հաղորդ չէ խոշոր—ճար-տարարուեստի և պատրաստուած նիւթի հայթայթումի գործին, և մանաւանդ որպէս Ասիա-նաև տարր մը, որ ամեն աշխարհներ-ու, կանութեան մէջ կը կազմէ քաղաքակրթական-յառաջդիմական տեսակէտէն ամենէն յուսահատեցուցիչ տարրը...։

Այժմ կը մնայ մեզի քննել աւելի կարևոր հարց մը։

Ռուսիոյ մէջ յառաջ եկած շարժումը, այդ անիշխանական տեսակ մը խորշակը, իրականին մէջ «ընկերային յեղափոխու-թեան» կամ, ինչպէս պոլշեւիկները սիրեցին յորջորջել, «Յեղա-փոխութեան շարունակման» շարժումն էր։

Մեր ընթերցողներուն համար պարզ եղաւ կարծեմ, որ ըն-կերային յեղաշրջումը իր էութեան մէջ համամարդկային ըլլա-լով, շահն ու ղեկավարութիւնն ալ միջազգային կըլլայ, այսինքն շարժումը կսկսուի ամենանպաստաւոր ու պատրաստուած և տա-րածուելու յարմար միջավայրէն։

Ընկերային յեղաշրջման շահագրգռուած և դէպի անոր դի-մող Միջազգային ընկերվարութիւնը, կամ որևէ ծանօթ թէ ան-ծանօթ ուժ, այնքան տհաս չէր կարող ըլլալ, որ գիտականօրէն այդքան աննպաստ միջավայրէ մը սկսէր շարժումը։

Պարզ է ուրեմն, որ շարժումը ոչ միայն տրուեստական, այլ և ԿԵՂԾ էր....։

Թողլով քաղաքական հետաքրքրութիւնը, որ ունի ռուս կա-ռավարութիւնը իր երկրին մէջ տեղի ունեցած շարժումի մը լուսաբանութեան մասին, մենք կը մատնանշենք այն բնական շահագրգռութիւնը, որ ունի Միջազգային ընկերվարութիւնը և կամ ընկերային յեղաշրջման մը համաշխարհային փլանը պատ-րաստող ուէ անմռունչ ոյժ, երևան հանելու զինքը կեղծող ա-Փէրիզմը։

Երկու պարագայ կարելի է ենթադրել. կամ շարժումը բո-լորովին յետադիմական մութ գործունէութեան մը արդիւնք էր, վիժել տալու համար Ռուսիոյ մէջ ձեռք բերուած քաղաքական ազատագրութիւնը, և ատիկայ պատրաստուած էր գերմանական և ռուսական բռնապետութիւններու կողմէ, որոնց պաշտօնեա-ները անպատճառ մեծ և վտանգաւոր ու ծախուած բանակ մը կը կազմեն գերմանական soi-disant սոցիալ-դեմոկրատի և Ռու-սիոյ պղտորուող տարրերու մէջ։

Միւս կողմէ, եթէ այդ տարրերուն մասամբ անհաղորդ, միամտօրէն համոզուած ընկերվարականներ, իրենք իրենց գըլ-խուն սկսան շարժումը, յանձնապաշտի աթոռին վրայ են դարձ-եալ, էնթէռնասիօնալէն անկախ ազգային-չիմարական հողի վրայ նեղմտօրէն սկսելնուն համար աշխարհի ամենէն սըլֆ շարժումը և պատճառ դառնալնուն համար, որ քիչ մնաց կոր-ծանի 180 միլիոն ժողովուրդի քաղաքական ազատագրութիւնն ու երջանկութիւնը։

Լ. Թիւթիւնճեան

# ՖՐԱՆՍԱՆ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Յուլիսի 4-ին Միացեալ Նահանգների զինուորատար առա-ջին նաւը երբ հասաւ Ֆրանսա, մեծ ոգևորութիւն և հանդէս-ներ և բազմաթիւ հանդիսականների ընդմէջէն անցնում էին տեղի ունեցաւ Պարիզի մէջ։ Ամերիկեան գնդերը մեծ ովացիա-փողոցով։ Ֆրանսական թերթերը լեցուն են այդ մեծ հանդէսի նկարագրութիւններով։

«Le Matin» թերթը, Ամերիկեան ազատ կառավարութեան զօրքերի մուտքը Ֆրանսիայում՝ համարում է մի նոր յաղթանակ տեւտոնեան բարբարոսութեան դէմ. մարդկային պատմութեան մէջ երբէք չը պիտի մոռացուի այն հանգամանքը, որ ամբողջ աշխարհը ծառացաւ ընդդէմ Գերմանիոյ՝ ազգերի ազատութիւնն ու արդարութիւնը պաշտպանելու համար։

Ֆրանսայի մինիստր-նախագահ Ալէքսանդր Ռիպօ այդ առ-թիւ արտասանել է մի նշանաւոր ճառ պատերազմի նպատակ-ների մասին։

«Երբ Ամերիկացիները—ասում է մինիստր-նախագահը— ժամանակցեցին ներկայ համաշխարհային կռուին, նշանակում է, որ ապագայ խաղաղութեան մասին կարծիքների կատարեալ ներ-դաշնակութիւն է տիրում դաշնակիցների և նրանց միջև։

«Ինչ վերաբերում է Ալզաս-Լորէնին, որ այնքան սատկօ-րէն համակել է մեր սիրտը, Միացեալ Նահանգները շատ լաւ ըմբռնեցին ֆրանսական ձգտումների արդարութիւնը և նրանք հրապարակ իջան շուտափոյթ իրագործելու այդ ձգտումներն ու աղնիւ զգացմունքները։

«Բելգիան, Սերբիան, Ռումանիան, Հայաստան և Ֆրան-սայի մի քանի գաւառամասերը ենթարկուեցին մի զզուելի և անգութ ասպատակութեան և ան՝ կարագրելի բարբարոսութեան. այդ երևոյթն եւ շարժեց Միացեալ Նահանգների խիղճը։

«Ինչպէս Միացեալ-Նահանգների Նախագահ Վիլսոնը յայ-տարարեց, կայ նաև մի ուրիշ վտանգաւոր բան. Գերմանական միլիթարիզմը, որ մեզ նետեց ներկայ ահռելի պատերազմում, եթէ չը ջախջախուի, յաւիտենական չարիք պիտի լինի չէզոք ազգերի համար։ Ինչպէս Անգլիոյ նախարարապետ Լոյդ Ճօրճը, այնպէս էլ Վիլսոնը և մենք յայտարարում ենք, որ աւելի դիւ-րին պիտի լինէր պատերազմը վերջացնել և խաղաղութիւն հաս-տատել, եթէ երբէք Գերմանիոյ կայսեր փոխարէն մեր դիմաց գտնուէին արդարութեան հիմունքների վրայ հիմնուած դեմոկ-րատիայի ներկայացուցիչները։

«Յաղթութիւնը անշուշտ մեր կողմը պիտի մնայ։ Ճիշդ է, որ երեք տարուայ ընթացքում շատ տառապանք և դժուարու-թիւն քաշեցինք, բայց մի ֆրանսացին պիտի ուզէ թուլանալ և

իր տառապանաց վարձահատումը չստանալ։ Մոտծկայ յաղթանակը մենք կարդում ենք բոլոր այն մարտիկների աչքերում, որոնք գալիս խտացնում են մեր շարքերը։

«Այս հսկայական պայքարին մասնակից և ականատես ժողովուրդները լաւ գիտեն, որ դաշնակիցների դատը արդարութեան դատն է. Ամերիկայի միջամտութիւնը ոչ միայն մեր անկախութեան, այլ և բոլոր ազգերի անկախութեան երաշխիքն է։

«Համերաշխութեան և ազատութեան հաւատքով բարձրացնենք մեր հոգիները, կատարուող դէպքերի վսեմութեան ներդաշնակենք նրանց։

«Հաւատացող լինենք մեր ճշմարտութեան և քաջասրտութեան։ Հաւատացող լինենք նաև այն բանին, որ մենք հաստատամտօրէն պիտի մարտնչենք ոչ թէ մահուան առաջնորդող ամօթալի խաղաղութիւն ձեռք բերելու համար, այլ մի խաղաղութիւն, որ հիմնուած լինի արդարութեան սկզբունքների վրայ։

# Ո՞Վ Է ՊԱՏՃԱՌԸ ՆԵՐԿԱՅ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

*(Թիւրք մամուլից)*

Բագու հրատարակուող «Սովգաթ» թուրք շաբաթաթերթի № 220-ին մէջ կը կարդանք վերոգրեալ խորագրով յօդուածը։

«Վերջերս, Անգլիայի դեսպան Ճորճ Պիւքոյնի՝ մայրաքաղաքի թերթերու թղթակիցներուն հետ ունեցած զրուցատրութեան մը միջոցին այսպէս ըսած է.—

«Ներկայ համերոպական պատերազմին թափուող անմեղ արիւններու, շէն ու հարուստ երկիրներու մոխրակոյտի վերածուելուն բուն պատճառն ու պատասխանատուն Գերմանիան է. ապագայ հաշուեյարդարութեան ժամանակ Գերմանիայի վզին կը ծանրանայ պատասխանատուութեան հսկայ բեռը։

«Գերմանիոյ այսպէս պատերազմիկ և ռազմատենչ պետութիւն մը դառնալուն պատճառը հանգուցեալ Բիզմարքն է եղած, այն ռազմագէտ մարդը, որ իւր պետութեան յառաջադիմութիւնը, տնտեսա-կուլտուրական զարգացումը միմիայն նկատած է հրանօթներու և զինուորական ուժի շատութեան մէջ։ Նա էր, որ պատրաստեց այդ ուղղութեամբ Գերմանիային և հասցուց այս օրուան։

«Վերջին երկու տասնեակ տարիներու պատմութեան եթէ նայենք՝ կը տեսնենք, որ գերմանները ոչ թէ օրերով, այլ ժամերով և թերեւս րոպէներով կը պատրաստուէին ներկայ աշխարհաքանդ պատերազմին, օրէցօր հնարելով և շինելով նոր և կատարելագործուած ձևի ռազմանիւթեր։

«Ի տես Գերմանիոյ այսպիսի տենդագին պատրաստութեան, եւրոպական միւս պետութիւններն էլ իրենց հերթին կաշխատէին մարդկութիւնը բնաջնջող և երկիրը քարուքանդ անող այլազան տիպի հրանօթներ պատրաստել՝ գերմանական անխուսափելի պատերազմին դիմադրելու համար։

«1913 թուականին Գերմանիան երկրի խոշոր կապիտալիստներէն—իբրև եկամտային հարկ—գանձած 500 միլիոնի չափ խոշոր գումարը ծախսած է պատերազմին անհրաժեշտ նիւթերու համար։ Ճիշտ այդ թուականին էր, որ ֆրանսացի դիւանագէտ մը ըսաւ ինձի, թէ՝ «Գերմանիան որ այսքան հսկայական ծախսեր ընելով բանակները կըստուարացնէ, երկու տարին չլրացած սա (Գերմանիան) Եւրոպան արեան ծովի մը պիտի վերածէ»․ և ահա նոյն դիւանագէտի գուշակութիւնը իրականացած է և այսօր արար-աշխարհը կը լողայ արեան մէջ։

«Վերջին ժամանակներս, գերմանացիները ծովու վրայ առաջնութիւն ձեռք բերելու ցաւովը տարուած՝ խոշոր նաւեր պատրաստելու սկսած էին, այդպիսով իրենց նպատակն էր թէ ծովուն և թէ ցամաքին տիրապետութիւնը։ Մինչդեռ եւրոպական տէրութիւններէն Անգլիան, Ֆրանսան և Ռուսաստանը քանի տարի է, որ կաշխատէին պակսեցնել պատերազմին պատկանող իրենց ծախսերը. նոյնիսկ խնդիրը այն եզրակացութեանը եկած էր, որ այլեւս պատերազմներ չպիտի տեղի ունենային, այլ պետութեանց միջև ըլլալիք անհամաձայնութիւնները պիտի հարթուէին Լահէյի մէջ կայանալիք ներկայացուցչական ժողովին մէջ։ Սակայն այս բանը Գերմանիային դուր չեկաւ և ստեղծեց այսօրուան մեծ պատերազմը։

«Ուրեմն,—ըսած է Ճորճը,—բոլորովին յայտնի իրողութիւն մըն է, որ միակ պատճառը այս պատերազմին՝ Գերմանիան է։ Ոմանք կարծեն, թէ Անգլիան ալ մեղսակից է այս կատաստրոֆին. այդպիսիներուն մենք խորհուրդ կուտայինք, որ ուշադրութեամբ կարդային մեր հրատարակած «Կապոյտ Գիրք»ը, որուն մէջ մանրամասնօրէն գրուած է այդ մասին։

Խօսակցութեան վերջանալուն՝ Ճորճը ըսած է.—

«Եւրոպայում, ապագայի հանգիստ և խաղաղ ապրել ուզողները անհրաժեշտօրէն պէտք է այս պատերազմը շարունակեն—թէկուզ ինչ գնով էլ լինի—մինչև որ Գերմանիան պարտաւորուի հաշտութեան ձեռք կարկառել և առաջարկել հաշտութեան պայմանները, մինչև որ ուժասպառ լինելով միանգամ ընդ միշտ անոր հեգեմոնիան վերանայ Եւրոպայի գլխուն վրայէն»։

Թարգմ. Գ. Մանասեան

# Գաւառ

## ՄԵՐ ՑՐԻԵՐԻՑ

Ջաքաթալայի շրջանը անտէր ու անտիրական է. ամեն ոք իրեն մեծաւոր. իշխանաւոր, հրամայող է համարում, իսկ լսող, հրամանները կատարող չկայ մէջտեղը։

Մարդուս կեանքը մի մազից է կախուած,—նա չը գիտէ վաղը ինքը ողջ-առողջ պիտի մնայ իր ընտանեօք թէ ոչ. իր ունեցած-չունեցածի տէրը պիտի մնայ թէ ոչ։

Կատարեալ անարխիա է տիրում մանաւանդ շրջանիս համարեա բոլոր գիւղերում. օրը ցերեկով քաշում տանում են մարդակերպ գազանները գիւղացոց մալը, տաւարը, առձեռն դրամը, սպանում անգթօրէն, շատ անգամ անյայտացնում առ չնչացած գիւղերն անգամ, որոնց հետքը Աստուած միայն կարող է գտնել...

Ամենակարճ միջոցում բազմաթիւ ոճրագործութիւններ և խժդժութիւններ կատարուեցին մեր շրջանում և, ինչպէս ասացի, ոչ մէկի հետքը երևան չեկաւ։

Այստեղ-այնտեղ, աւազակները սպանում, կողոպտում են ճամբորդներին և չքւում իրենց ապահով որջերում. մի քանի օրուայ մէջ մի քանի վրացի սպանուեցին, նրանց ձիերը, ոչխարները քշեցին տարան։

Եւ այս ամենի առաջն առնող չկայ, որովհետև երկիրը յանձնուել է անվստահելի անձանց։ Ժողովուրդի մէջ գործում են մութ ույժերը։

Այդ մութ անձնաւորութիւնները գործում են բացարձակ, անվախ. զգում են ֆանատիկ, խոր տգիտութեան մէջ խարխափող, բայց լաւ զինուած միւսիւլմաններին։

Նրանք, այդ մութ ույժերը, ժողովուրդը զգում են շրջանիս պարենաւորման գլուխն անցած անձանց դէմ. կամենում են քարուքանդ անել տալ ամբարները։ Ժամանակն է այս անարխիայի արմատը կտրել, ոչնչացնել սաղմի մէջ. ժամանակն է ուշադրութիւն դարձնել նաև մեր շրջանի խաղաղ տարրերի բազմաթիւ բողոքներին... Չէ որ բանը բանից անցնելուց յետոյ՝ ուշ կը լինեն ամենախիստ միջոցներն անգամ։

Զաքաթալա Հմ. Դիմաքսեան

---

ՍՈՒԼՏԱ

Ջաւախքի գիւղացիները շուտով աւարտում են խոտահարքը, դաշտավայրի գիւղացիները սկսեցին զարեքաղը. Թէ հացը և թէ խոտը այս տարի լաւ է։ Ջաւախեցին շատ կարիք է զգում հընձուորների և գերանդու. շատ գիւղերում տասնեակ ընտանիքներ մի հատ աշխատաւոր ձեռք չունեն դաշտային աշխատանքները առաջ տանելու։ Գովելի են փոքրահասակ պատանիների ջանքերը, որոնք խումբ խումբ գնում են հանդ հունձ անելու. դուրս է եկել շատ գիւղերում և հայ օրիորդը, կինը հնձուոր է դառել դաշտում և փայլեցնում է աջ ու ձախ իր գերանդին։

Մեր մամուլում շատ անգամ է գրուել ու բողոքուել Ջաւախքի բազմաթիւ գիւղերի ազգային դպրոցներից զուրկ լինելու մասին, բայց մինչև օրս ոչ հոգևոր իշխանութեան և ոչ էլ հայ կազմակերպութիւնների կողմից լսուել է մեր ձայնը. միակ Կ. Հ. Բ. Ընկերութիւնն է, որ ունի մեր գաւառում 5—6 դպրոցներ, որ հարիւր հազար ազգաբնակչութեան հանդէպ շատ փոքրաթիւ է և սակաւարդիւնք։ Մինչև երբ պէտք է Ջաւախքը աչքաթող լինի մեր ազգայինների կողմից։ Ջաւախքի հայ գիւղերը խարխափում են տգիտութեան օրօրոցի մէջ։ Այսպէս մինչև երբ։

Արսէն քահ. Բլրցեան

# ՎԵՐԱԴԱՐՁ ՏԻՖԸ

(Typhus recurrens)

Ներքին մի բնազդումով ամեն մի շնչաւոր արարած, բանաւոր թէ անբան, պաշտպանում է իր թշնամիներից այս կամ այն միջոցներով։

Պաշտպանութիւնը լինում է անհատօրէն և մասսայօրէն, նայած վտանգի չափին ու թշնամու ուժին։ Անբանի պաշտպանութեան միակ զէնքը բնութեան տուածն է, իսկ այսպէս ասած բանաւորը, այսինքն՝ մարդը ամեն անգամ աշխատում է գործադրել այնպիսի զէնք կամ միջոց, որպիսին անհրաժեշտ է ոչնչացնելու թշնամուն, կամ նրա հարուածները չէզոքացնելու։

Մարդն էլ, անասունն էլ ունեն տեսանելի թշնամիներից զատ, նաև անտեսանելի թշնամիներ։ Միայն անասունը չի կըռւում անտեսանելի թշնամու դէմ, որովհետև չի ճանաչում նրան, իսկ մարդը իր նմաններին ոչնչացնելու համար զանազան հնարներ որոնելու հետ միասին, մտածում է նաև միջոցներ անտեսանելի թշնամիների դէմ։

Անտեսանելի թշնամի ասելով, անկասկած, ընթերցողը սատանայ չի կարծի, այլ այն բազմատեսակ անթիւ միկրոբները, որոնք մեր մարմնի մէջ մտնելով այս կամ այն հիւանդութիւնն են առաջացնում։

Հիւանդութիւնների և նրանց բուժելու համար թողնենք բժիշկներին մտածելու, իսկ մենք ծանօթանանք այն միջոցների հետ, որոնք անհրաժեշտ են մեզ արգելք լինելու՝ անտեսանելի թշնամիների մեր մարմնի մէջ մտնելուն։

Անտեսանելի թշնամիները վաղուց գոյութիւն ունեն, բայց մարդը չէր ճանաչում նրանց և իր առողջութեան թշնամի էր կարծում միայն ցուրտը ու նրանից միայն աշխատում պաշտպանուել, իսկ պաշտպանուելու համար տաք շորերի մէջ փաթաթւում և տանը նստում։

Մարդկային միտքը աւելի լայն բացեց իր աչքերը ներկայ պատերազմի ընթացքին, երբ ցրտից ու խոնաւութիւնից զատ, անքնութիւնը, սննդի պակասութիւնը և ներւային յոգնածութիւնը զրկեցին մարդկային օրգանիզմը կենսատու նիւթերից և կռուելու ընդունակութիւնից, ազատ ասպարէզ բանալով միլիոնաւոր բացիլների գործունէութեան։

Վերադարձ տիֆի և բծաւոր տիֆի (տես «Համբաւաբեր» № 30) մէջ կայ մի նմանութիւն, որ վարակման եղանակի մէջ է կայանում. երկու դէպքում էլ գրեթէ բացառապէս միակ փոխանցիկը ոջիլն է։

Այս երկու հիւանդութիւնն էլ առանձնապէս սիրում են չքաւորներին, մասնաւորապէս կեղտոտութիւնը։

Կայ մի մեծ զանազանութիւն այս երկու հիւանդութիւնների միջև. այդ այն է, որ վերադարձ տիֆը բծաւորի նման ամբողջ երկու շաբաթ չի ծանրանում հիւանդի վրայ, կամ աղիքային տիֆի պէս սիստեմատիկ կերպով քայքայում հիւանդին, այլ մի քանի օր միայն և թէպէտ նորից նա վերադառնում է հարուածելու իր զոհին, բայց առաջին, որ այդ ժամանակուայ ընթացքում հիւանդը որոշ չափով ույժ է ձեռք բերում հիւանդութեանը հանդուրժելու և երկրորդ՝ հիւանդութեան բացիլները հակաթոյն են պատրաստում մարմնի մէջ, այդ նոյն հիւանդութեան թոյնի դէմ։ Այսպէս ասած իմմունիտէտ են կազմում։ Մօտաւորապէս այնպէս, ինչպէս որևէ մի պատուաստ, որոշ հիւանդութեան թոյնի դէմ։ Երևի այս է պատճառը, որ քանի գնում, այնքան աւելի նուազում են թէ կրկնուած հիւանդութեան օրերը և թէ հիւանդութեան ույժը։

Այսպէս, օրինակ, վերադարձ տիֆի կրկնութիւնները, որ մեզ մօտ լինում են ամենաշատը վեց անգամ, ա. անգամ տեւում է միջին թւով մօտ 6 օր, բ. անգամ—4 և կէս օր, գ. անգամ—3 օր, դ. անգամ—2 օր, ե. անգամ—1 և կէս օր, իսկ առանց տաքութեան օրերը, երբ հիւանդը գրեթէ առողջ է—ա. անգամ մօտաւորապէս 7 օր, բ. անգամ—8 օր, գ. անգամ 9 օր, դ. անգամ—10 օր, ե. անգամ—12 օր։

Բծաւոր տիֆի բացիլը մինչև այսօր տակաւին չի գտնուել, իսկ վերադարձ տիֆի մանրէնը 1868 թուից յայտնի է մեզ՝ շընորհիւ Օբէրմայէրի, որի անունով էլ այս զզուելի միկրոբը կոչւում է։

Վերադարձ տիֆի բացիլը միայն Օբէրմայէրինը չէ, կայ դրանց մի քանի տեսակները, որ տարբեր գիտնականներ են գըտել և բացի ոջիլից, ուրիշ միջատների միջոցով էլ են տարածւում. դա մեզ այնքան հետաքրքրական չէ, որովհետև այդ հիւանդութիւնները տաք երկրներում միայն գոյութիւն ունեն և կրկնւում են մօտ 9 անգամ, սակայն աւելի կարճ տևողութեամբ։ Մի ծանօթ բժիշկ (Стаценко) պատմեց, որ հարաւային Պարսկաստանում նա տեսել է վերադարձ տիֆ (возвратный тифъ) իր կըրկնութիւններով և տևողութեամբ շատ նման տենդին։ Իսկապէս նա տենդի շատ նման էլ է իր կռուելու տեսակով—յարձակւում է, հարուածում, ապա թագնւում, դարմանամուտ լինում, նորից

յարձակուելու դիտաւորութեամբ։ Ըստ Մեչնիկովի՝ սպիրոխէտներին (տիֆային մանրէ) լէյկոցիտներն են կլանում, բայց հատ ու կէնտ նրանք կարող են մնալ փայծաղի և ոսկրային ուղեղի մէջ։

Կասկածից դուրս է, որ հիւանդութեան թոյնը հիւանդի արեան մէջն է և այդ թոյնը չի մտնում օդի միջոցով, այլ հիւանդից անմիջապէս, կամ նրան կծած ոջլի միջոցով։ Սպիրոխէտներին (մանրէներ) կարող են տարածել նոյնպէս և տնային ու դաշտային մկները (իրենց վրայի ոջիլներով)։

Մարդ վարակւում է վարակուած ոջլի թոյնը իւր վրայ պատուաստելով կամ տրորելով ոջլին կծելու ժամանակ։ Ոջլից նրա ձագերին է անցնում սպիրոխէտի թոյնը։ Այս թոյնը, ինչպէս և բծաւոր տիֆի ժամանակ, անմիջապէս պատրաստ չէ վարակման համար, այլ 10—12 օրից յետոյ։ Իսկ կծելուց 2 օր յետոյ սպիրոխէտները իբր թէ անյայտանում են ոջլի մարմնից—այսպէս են պնդում գիտնականները։

Վերադարձ տիֆից պաշտպանուելը շատ հեշտ կը լինէր, եթէ մենք ունենայինք կարգին հիմունքների վրայ դրուած հիւանդանոցներ, ուր լինէին իրարից որոշ տարածութեամբ հեռու մահճակալներ։ Հիւանդը ընդունելուց առաջ պէտք է խուզել կամ ածիլել գլուխը, լողացնել և շորերը փոխել։ Այս բոլորը անելու ժամանակ պէտք է կրել ռետինէ ձեռնոցներ, որովհետև սպիրոխէտներն անցնում են ոչ միայն վնասուած, այլ և առողջ կաշուի միջոցով

Նկարագրածս հիւանդութեան բժշկութեան համար չեմ աւելացնում և ոչ մի խօսք, որովհետև հիւանդութիւնների բժշկութեամբ միայն բժիշկները պիտի պարապեն, իսկ հասարակութեան անհրաժեշտ է գիտենալ, թէ ամեն մի հիւանդութիւն ինչպէս է փոխանցւում, որպէս զի ըստ այնմ էլ կարելի լինի պաշտպանուել։

Բժ. Աւ. Տէր Յովհաննիսեան

# Գեղարուեստ

***

Լողում է հոգիս քո հայեացքներում՝
Հրճւում էութիւնս խոր հիացմունքով.
Փառաբանում՝ ես ինձ քո երգերում,
Եւ հպարտ եմ ես այժմ՝ քեզանով։

Աստղերը նազով ժպտում են վրաս,
Լազուր երկնքի անհուն բարձունքից.
Դու երեւում ես որպէս մի երազ,
Հիւսուած աստղերի լուսեղէն ցոլքից։

Լազվարդ երկնքով քարւանն է անցնում
Հրեղէն փայլով ծիծղուն աստղների.
Ցայտնում՝ ես դու սրտիս խորանում,
Գեղ հայեացքներով քո ծով-աչքերի։

Տիգրան Տէրունի

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Յօգուտ գաղթականների շնորհակալութեամբ ստացանք բժիշկ Նարիմանեանից 100 ռ., Կօրօնից, Տրուբեցկոյից և Միլլերից 5 ռ.։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Օգոստոսի 15-ին կայացաւ Հայկ. Կենտ. Կոմիտէի հերթական նիստը, նախագահութեամբ պ. Ա. Յարութիւնեանի, ուր եղան զեկուցումներ և արուեցին հետևեալ որոշումները.—

1) պ. Նախագահը զեկուց, որ Կոմիտէի կարգադրութեամբ Ալաշկերտի որբանոցը տեղափոխուել է առժամանակ Ալէքսանդրապոլ· որոշեց անմիջապէս կարգադրել Ջալալ-Օղլիի որբանոցային շինութիւնները և Ալաշկերտի որբանոցի որբերը տեղափոխել այնտեղ։

2) Գաղթ. Գլխ. Խորհրդի գործադիր կոմիտէն յայտնել է առանձին գրութեամբ Կոմիտէիս, որ փախստականներին տրուող նպաստի չափը չէ աւելացնելու, այլ մնալու է նոյնը։

Որոշուեց այդ գրութեան պատճէնը անմիջապէս ուղարկել Կոմիտէիս գաւառական լիազօրներին ի գիտութիւն։

3) պ. Նախագահը զեկուց, որ հարկաւոր է տեղս կամ գաւառական քաղաքներից մէկում բաց անել յատկապէս ծեր և աշխատանքի անընդունակ գաղթականների համար մի անկելանոց, ըստ որում հարկաւոր է կազմել ու մշակել մի նախահաշիւ ներկայացնելու Գաղթ. Գործ. Խորհրդին ի հաստատութիւն՝ ստանալու պետական միջոցներից նիւթական աջակցութիւն։

Նախատեսւում է անկելանոցը կազմել շուրջ 65—70 գաղթականների համար։

4) պ. Ա. Յարութիւնեանը յայտնեց ժողովին իբրև լուր, որ Անդրկովկասեան Առանձին Կոմիտէում—Կոմիսարիատ, պ. Մ. Պապաջանեանի նախագահութեամբ գումարուել է մի նիստ, որ զբաղուել է ինվալիդ զինուորների ընտանիքներին ապահովելու խնդրով։

Նիստին հրաւիրուած էին բոլոր հասարակական հիմնարկութեանց ներկայացուցիչները, ինչպէս և զինուորական մարմիններից։

Առայժմ ժողովը դեռ վերջնական որոշման չի հանգել, կազմուել և ընտրուել է ժողովականներից մի գործադիր մարմին—բիւրօ, առայժմ հարկաւոր տեղեկութիւններ հաւաքելու համար, թէ Կովկասի ո՛ր վայրերում որքան նպատակայարմար է բաց անել աշխատանքի տներ, ինվալիդների և նրանց ընտանիքների համար, ինչպէս և արհեստանոց-դպրոցներ չափահաս երեխաների համար։

Առաջադրելով վերոյիշեալ խնդիրը ժողովին պ. Նախագահը խնդրեց որոշել, թէ արդեօք Ընկերութիւնը կարո՞ղ է մասնակցութիւն ցոյց տալ այդ գեղեցիկ ձեռնարկութեան մէջ, ըստ որում ժողովը ընդառաջ գնալով պ. Նախագահի առաջարկին՝ միաձայն որոշեց ակտիւ մասնակցութիւն ցոյց տալ այդ գործին։

—Տրապիզոնից հայր Միլեանը հեռագրում է, որ նորանոր գաղթականներ են գալիս Տրապիզոն—Օրդուից։ Երէկ այնտեղ են հասել դարձեալ 50 հոգի։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Սարիղամիշից տեղական պահեստի կառավարիչը մեզ հեռագրում է, որ Էրզրումի, Բայբուրթի, Մամախաթունի, Երզն-

կայի, Մուշի և Մանազկերտի շրջաններում սով է տիրում։ Նոյնպիսի տեղեկութիւններ են ստացուել նաև Նոր-Բայազէտի, Վանի, Ալաշկերտի, Ղամարլուի և ուրիշ շրջաններից։

Յուլիս ամսում ստացուած ալիւրը հազիւ մի ամիս բաւականութիւն տուեց ծայր աստիճանի յուսահատ գաղթականութեան պէտքերին, այնպէս որ օգոստոսի սկզբներում շատ քիչ բացառութեամբ պահեստներում ալիւրի պաշարը բոլորովին վերջացել էր։

Օգոստոս ամսում գաղթականների դրութիւնը կրիտիքական է դառել և մօտիկ ապագայի հեռանկարը միանգամայն անմխիթարական պիտի համարել։

Գաղթականների պէտքերին յատկացրած ամսական 167 վագոն ալիւրից օգոստոսի 1 ից մինչև այժմ, երկու շաբաթուայ ընթացքում, ստացուած է ընդամենը 5 վագոն։ Ըստ ստացուած տեղեկութեանց և ստեղծուած ճգնաժամին՝ պէտք է ասել, որ կարելի է յոյս տածել աւելին ստանալու։ 200 հազարից աւելի մերկ և քաղցած գաղթականութեան ալիւրի այդ ստացուած քանակը նոյնքան ոչնչութիւն պիտի համարել, որքան կաթիլը ծովում։

Թիֆլիսի նահանգական պարէնաւորման կոմիտէն հացի ճգնաժամը թեթևացնելու համար ձեռնարկել է հացը փոխարինել մօտ օրերս ստացուելիք գետնախնձորով։ Նոյն նպատակն է ունեցել և Ընկերութիւնս գաղթականների վերաբերմամբ, որպիսի նպատակով դեռ երկու շաբաթ առաջ Ախալցխա ուղարկուած է Ընկերութեանս լիազօրը գաւառում գետնախնձոր գնելու։ Վերջինս մեզ տեղեկացնում է, որ արդէն 5 վագոնի չափ գետնախնձոր գնուած է և կանխավճարները տուած և թէ մօտագրութիւն կայ գնել 10 վագոն ևս։ Գնուած գետնախնձորը գաւառից արտահանելու համար պահանջւում է Թիֆլիսի նահանգական պարէնաւորման կոմիտէի թոյլտուութիւնը, ուստի այդ առթիւ միջնորդութիւն է յարուցուած պարէնաւորման կոմիտէի առաջ և պէտք է հաստատ յոյս տածել, որ նահանգական պարէնաւորման կոմիտէն հարկաւոր թոյլտուութիւնը պիտի տայ, քանի որ ուրիշ միջոց չկայ հարիւր հազարաւոր գաղթականութեանը դաժան սովի ճիրաններից փրկելու։

Պէտք է նոյն յոյսը տածել և Գանձակի նահանգական պարէնաւորման կոմիտէի վրայ, որտեղ Ընկերութիւնս մտադրութիւն ունի ցորեն և գարի գնելու։

Ըստ ստացուած տեղեկութեանց այդ նահանգում ցորենի և գարու բերքը այս տարի բաւարար է, չնայած գները թանկ են, օրինակ՝ ցորենի պուդը 12 ռ. է։ Տեղական ժողովուրդը շուկայում ցորեն և գարի գնելու պէտք չունի, իսկ աւելորդ պաշարը, որ շուկայ պիտի հանուի՝ որպէս զի դա չընկնի շահագործողների ձեռքը, նահանգական կոմիտէն, աչքի առաջ ունենալով Ընկերութեանս նպատակը, առաւելութիւն պիտի տայ նրան։

# Քրոնիկոն

Գաղթ. գործի խորհրդի գործադիր կոմիտէն յայտնել է Հ. Կ. Կոմիտէի խորհրդին, որ փախստականներին տրուող նպաստի չափը չէ աւելացուելու, այլ մնալու է նոյնը։

—Սարիղամիշի գաղթ. պահեստի կառավարիչ Քոթանջեանը Կ. Հ. Բ. ընկ. կից պետ. պարէնաւորման բաժանմունքին հեռագրում է, որ ալիւրի մեծ կարիք կայ՝ Բասէնի, Էրզրումի, Բայազիտի, Մամախաթունի, Երզնկայի, Մուշի և Մանազկերտի շրջաններում։ Խնդրում են անյապաղ այնտեղ ուղարկել 40 վագոն ալիւր, այլապէս սովամահութեան դէպքերը անխուսափելի են։

—Թիֆլիսի նահանգի ժողովրդական դպրոցների ուսուցիչների կենտրոնական վարչութիւնը իր ճիւղերից տեղեկութիւն է ստացել, որ եթէ սեպտեմբերից յիշեալ դպրոցների դասատուների ռոճիկները 60 ռ. չբարձրացուի 100 ռուբլու, նրանք չեն պաշտօնավարելու։

—Քաղ. Մ. Նուիրաբերութեան բաժանմունքին կից բացուել է կուլտ.-լուսաւորութիւն տարածող գրասենեակ, որի նպատակն է բանակին գրականութիւն հայթայթել։

—Համաձայն երկրագործ. մինիստր Չերնովի կարգադրութեան, ամսիս 20-ին քաղաքում կատարուելու է երկաթեայ և ուրիշ թիթեղեայ կտորտանքների հանգանակութիւն, երկրագործական գործիքներ պատրաստելու նպատակով։

—Պետական միջոցներով պահուող Կ. Հ. Բ. ընկ. փախստականների պարէնաւորման բաժանմունքի Քարուանսարայի պարէնաւորման պահեստի. կառավարիչ Արմենակ Գափամաճեանը իւրացնելով բաժանմունքին պատկանող 2,050 ռ., յայտնել է, որ իբր թէ անյայտ չարագործներ յարձակուել են իրեն վրայ և կողոպտել։ Բարեգործ. ընկ. Խորհուրդը քննութիւն կատարելով եկել է այն եզրակացութեան, որ յիշեալ գումարը իւրացրել է ինքը, Գափամաճեանը, որի դէմ խորհուրդը դատ է սկսել։

—Նոյն բաժանմունքի Ղարանլուղի (Նոր Բայազէտի գաւ.) պահեստապետ իրաւաբանական ճիւղի ուսանող Ալէքսանդր Ղարայեանը իր տնօրէնութեան տակ եղած փախստ. պար. պահեստի գումարներից իւրացրել է 2,000 ռ. և անյայտացել։ Բարեգ. ընկ. Խորհրդին յաջողուել է նրան ձերբակալել տալ Թիֆլիսում և միլիցիայի միջոցով շտապով ուղարկել Նոր-Բայազէտի քննիչի մօտ։

—Կովկասեան 23 րդ գնդի հայ զինուորները հեռագրում են Անդրկովկասեան Առանձին Կոմիտէին և զինուորական շտաբին, որ միջոցներ ձեռք առնի պաշտպանելու երկրում աւազակութիւնների ենթարկուած իրենց ընտանիքներին։

—Թիֆլիսի Քաղ. Դումայի գործերը ընթանում են խիստ դանդաղ, նիստերին լինում են կուսակցական վիճաբանութիւններ։ Սոց.-դեմոկրատների ֆրակցիան իրեն համարում է տէր և տնօրէն քաղաքի գործերին, չի ընդունում միւս ֆրակցիաների համեմատական արժէքը և օրինական տեղ չի տալիս նրանց գործունէութեան։

—Ստացանք Ա—Դօ-ի «Մեծ դէպքեր Վասպուրականում» գիրքը, էջ՝ 488, գինը՝ 5 ռ.: Ստացանք՝ Ախալցխայում հրատարակուող «Շարժում», Արմաւիրում հրատարակուող «Կարիք» թերթերը:

# Համաշխարհային պատերազմը

*Ռուսաց արեւմտեան ճակատում՝* վերջին շաբաթուայ ընթացքում կարեւոր ռազմական փոփոխութիւն չի կատարուել: Տեղի էին ունենում ուժգին հրաձգութիւն և առաջապահների մանր ընդհարումներ: Գերմանացիք ուզում են պատռել Ռիգայի գիծը՝ Պետրոգրադին մօտենալու համար, բայց ստացուած տեղեկութիւնների համաձայն չպիտի յաջողի իրենց ծրագիրը ի կատար ածել: Գեն. Բրուսիլովը յայտնել է, որ եթէ ռուս բանակը դիսցիպլինայի տակ դրուի, նա կարող պիտի լինի փոքր ժամանակում թշնամուն վանել հայրենի հողից, որովհետև ռուս բանակը թէ քանակով և թէ ռազմամթերքի կողմից բարձր է թշնամուց:

*Ռումանական ճակատում՝* կատաղի բնոյթ է ստացել ճակատամարտը: Այս ճակատի թշնամու զօրամասերի հրամանատար Մակէնզէնը ուժեղ ջանք է թափում կտրել ռումինո-ռուս բանակի ոյժը և առաջ անցնել Բեսարաբիայում: Օկնինի ուղղութեամբ, օգոստոսի 15 ին թշնամին սկսեց յամառ յարձակում. կռիւը տեւեց ամբողջ օրը փոխադարձ յաջողութեամբ: Ֆոկշանի ուղղութեամբ նոյն օրը թշնամին սկսեց յարձակուել Մունտելի մեր դիրքերի վրայ: Մեր զօրամասերից մէկը չցանկանալով հարկաւոր դիմադրութիւն ցոյց տալ թշնամուն, անկարգ կերպով փախուստի մատնուեց: Ամբողջ օրը թշնամին առաջ եկաւ և անցաւ Իրշտիտ-Սու-Վարնիցա Ֆիտեշնեշտի-Զէօսլիանիշտ գիծը:

*Կովկասեան ճակատում՝* Այս ճակատի վրայ կռիւները ըսկսում են կամաց կամաց կենդանութիւն ստանալ: Թիւրքական զօրամասերը քայքայուած են ամեն տեսակէտից և թոյլ դիմադրութիւն են ցոյց տալիս: Սև ծովի ափին ռուս զօրամասերը առաջանում են Օրդուի ուղղութեամբ: Մուշի շրջանում մանր կռիւներ են տեղի ունենում:

*Բրիտանական ճակատում՝* ըստ օգոստոսի 10-ի և 12-ի հաղորդագրութեան, բրիտանացիք առաջ են ընթանում Լանսից հարաւ-արեւմուտք: Իպրի շրջանում, Լանգեմարկից արեւելք, թշնամու գրոհները յետ են մղուած: Ինվերնոյի անտառներում կռիւը շարունակւում է, թշնամու կորուստները մեծ են:

Զինուորական վարչութեան տեղեկութիւններից երեւում է, որ մարտի 27-ից մինչև օգոստոսի 9-ը դաշնակից բանակը գերի է վերցրել 167,780 հոգի, իսկ պատերազմի սկզբից՝ միայն բրիտանացիք գերի են առել 192,213 հոգի, փոխարէնը տալով 50,500 հոգի:

*Ֆրանսական ճակատում՝* Շամպանիայում ֆրանսիացիք աջողութեամբ ամրակռում են թշնամու դիրքերը: Մասսի ափին վերցրած գերիների թիւը հասնում է 450 հոգու: Ըստ օգոստոսի 13-ի հաղորդագրութեան, ֆրանսիացիք առաջ են շարժուել Կալիֆորնիայի և Բիանկուրի գծով:

*Իտալական ճակատում՝* ըստ օգոստոսի 10-ի հաղորդագրութեան, իտալացիք ունեցել են նոր յաջողութիւններ. գերիների թիւը հասնում է 500 սպայի և 20,000 զինուորի: Առնուած են 60 թնդանօթ և շատ գնդացիրներ: Իտալական դրօշակը ծածանում է Մոնտէ-Սանտոյի լեռնագագաթին: Օգոստոսի 13-ին իտալացիները բռնեցին նաև 3000 գերի և պատռեցին թշնամու գիծը:

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1